«Գալով լեհեւռուս ոչ-յարձակման դաշնագրին որ դեռ չէ ծակագրուած Վարշաւիոյ կողմէ, կը շեշտուի թէ Լեհաստանի ընթացքը հանդէպ Ռումանիոյ՝ եղած է շատ պարկեշտ։ Լեհական կառավարութիւնը բացարձակ ապահովութիւն տուած է թէ Ռուսիոյ հետ դաշինք չպիտի ստորագրէ, մինչեւ որ ռուսեւռումէն բանակցութիւնները չվերջանան։

## Հնդկական խռովութիւնները

Պոմպէյի մէջ, ոստիկանութիւնը յարձակում գործեց ամբոխին վրայ, որ հաւաքուած էր տօնելու համար Փեշավէրի դէպքերուն տարեդարձը եւ կը մերժէր ցրուիլ։ Երկու հարիւրի չափ ցուցարարներ վիրաւորուեցան, որոնց քանը ծանր։ Մէկ հոգի սպաննուեցաւ։

Քաշմիրէն տրուած լուրի մը համաձայն, Քոտլի քաղաքին վրայ յարձակում գործեց 1000 հոգինոց զինեալ ըմբոստներու խումբ մը։ Ըմբոստները կրակեցին քաղաքին զօրանոցին վրայ եւ աւարի տուին դրամատուն մը, ըմբոստներէն երեք հոգի սպաննուեցան։

Կլոր Սեղանի կողմէ նշանակուած յանձնախումբին մասնակցող 60 հնդիկ ներկայացուցիչները Պոմպէյ հասան։ Շուկաները իբր բողոքի ցոյց փակուած էին, իսկ ամբոխը սեւ դրօշներ պարզած, ցոյց մը կատարեց ընդդէմ գործակցութեան, այն ճամբուն վրայ ուրկէ անցնելով պատուիրակները պիտի երթային կառավարչատուն։

## Բոլշեւիկեան ԺԷ. ընդհ. ժողովը

Մոսկուայի մէջ, բոլշեւիկեան 17րդ ընդհ. ժողովի բացման առթիւ, խորհրդային քաղաքականութեան մասին ճառեց գործավարներու խորհուրդին նախագահը Մոլոտով.

— Խորհրդային Միութեան արտաքին քաղաքականութիւնն ըսաւ, յստակ է խաղաղութեան քաղաքականութիւն մըն է։ Ամբողջովին կլանուած ենք մեր երկրին խաղաղ շինարարութեան գործովը եւ ամէն ջանք կը թափենք արգիլելու համար մեր ընկերվարական հանրապետութեան վրայ՝ ամէն նոր յարձակում։ Այսուհանդերձ խաղաղութիւնը խափանելու ձգտող գրգռութիւնները չեն դադրիր։ Ծայրագոյն-Արեւելքի դէպքերը մեզմէ կը պահանջեն ...

## Ցամաքային զինաթափման խնդիրը

## Լեհ-ռուսական դաշնագիրը

## «Արդիւն ձայնը» Հնդիկի դէմ

## Հնդիկ ընկերական վարչութիւն



Ց. Հ. Դ.

## Փարիզ եւ արուարձաններ

ՓԱՐԻԶԻ կոմիտէն դասախօսութեան կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ իրիկուն, ժամը 8.30ին, Մութալիթէի սրահը։

Կը խօսի ընկեր Վրացեան, նիւթ՝ «Հ. Յ. Դ. ներքին կեանքի մասին»։

ՇԱՎԻԼԻ Արդութեան խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին rue Ville d'Avrayի ծանօթ սրճարանի սրահը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ Զէյթուն կոմիտէի դասախօսականժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին rue Charles Chefson, ծխավաճառին սրճարանը։

## Գաւառ

ԼԻՈՆԻ Մարգպետ խումբի դասախօսական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը։ Կը խօսի Ընկ. Կ. Տայեան։ Նիւթ՝ «Հ. Յ. Դ. ծրագրի պարզաբանում»։ Կը հրաւիրուին ընկերներ եւ համակիրներ։

## "ՅԱՌԱՋ,, ԿԸ ԾԱԽՈՒԻ ԳԱՒԱՌԻ ՄԷՋ

| | |
|---|---|
| 1. ՄԱՐՍԷՅԼ | Tzeriguiantz G. 13 rue des Dominicains |
| 2. ԼԻՈՆ | khatchadourian Antranik, 202 rue Boileau. |
| 3. ՏԷՍԻՆ | Bodourian G., Avenue B. Palissy. |
| 4. ՎԱԼԱՆՍ | Perzikian Avedis, 26 Boulevard Vauban. |
| 5. ՍԷՆ ՇԱՄՈՆ | Germain Marcel, 34 Place du la Liberté. |
| 6. ՍԷՆ Թ՛ԷԹԻԷՆ | Madame Digonner, Place du Peuple (kiosk). |
| 7. ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻ | Eramian David, rue de la Liberté (Beulangerie Curtat). |
| 8. ԼԱՆՍԷՑ | Djelalian Simon, 4 rue Dr. Michaud. |
| 9. ԼԱ ՍԻՈԹԱ | Azadian kazaros, 11 rue Palamideau. |
| 10. ՊԱՐԿ ՏԸ ՓԷԱԺ | kassabian Souren, 50 Grand'rue. |
| 11. ՍԷՆ ՄՕՐԻՍ ՊԸՆՈԽԱ | Teissonnier, Dépositaire. |

ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է ԵՒ ՇՈՒՏՈՎ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ

## "ՓՈԹՈՐԿԷՆ ՎԵՐՋ,,

Գրեց՝ ՊԵՐՃՈՒՀԻ

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

## Թատերական շքեղ ներկայացում

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

## "ԱՐՓԻ,,

ԵՐԿՐՈՐԴ ԹԻՒ

28 Յունուար 1932

ԳԻՐՔ



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼԻ Հայ Ակումբը Վարդանանց տարեդարձին առթիւ կազմակերպած է հանդէս մը, որ տեղի պիտի ունենայ իր սրահներուն մէջ 114 Rue de Rome, այս Կիրակի, ժամը ...

## Ձեր փնտռած գիրքեր

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Օրտուի գիւղէն Մարիամ Համալեան, որ մեկնած է 1918ին ...

Gertrude ...

Friends of Armenia, Victoria St. London. S. W.

## ՎԱՐՁՈՒ Է

ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿ

96 R. Rivoli

Imp. A. DER (Agopian)

17, Rue Damesme, Paris (13)

Le Gérant H. STEPHAN

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (139)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## Հայոց դահիճը կը պատմէ

ԵՐՐՈՐԴ ՄԱՍ

## Հ. Յ. Դաշնակցութեան գործերը

### 18.— ԴԱՇՆԱԿՑԱԿԱՆՆԵՐԸ ՅԱՆԿԱՐԾԱԿԻ ԳՐԱՒԵՑԻՆ ՕՍՄԱՆԵԱՆ ՊԱՆՔԱՆ

Հրացանի եւ ատրճանակի այս անդադրում ձայները լսելով, Պոլսոյ ժողովուրդը դարձեալ խռովութեան սկսելու նշան ցոյց տուաւ։ Կոմիտէճիներէն 8 հոգի սպաննուեցան ...

Համիտի մասնաւոր լրտեսը նոյնքան շատ դրամ կը ստանար Եըլտըզի Պալատէն, չափազանց նենգ եւ Թուրքին թշնամի մարդ մըն էր։ Արդէն տեսակ մը առանձնաշնորհ...

ներքնչէ այն յոյսը թէ կարելի պիտի ըլլայ ստանալ կարգ մը նախապատրաստական արգիլումներ, եւ առով իրականացնել Ազգերու Դաշինքին Ցրդ յօդուածին մէջ արձանագրուած յանձնառութիւնները։

Անդրադառնալէ յետոյ Դերձանիոյ պաշտօնեքին (ծուխի պիտոյութեանց համար՝ իրաւունքներու հաւասարութիւն), Դանիոյ պատուիրակին եւ համաձայն գտնուեցաւ արգիլելու յարձակողական կարգ մը զէնքեր եւ քիմիական պատերազմը արգիլելէ զատ, պէտքը շեշտեց նաեւ արգիլելու քիմիական արտադրութիւնները եւ խիստ հսկողութեան տակ առնելու զանոնք։

Իսկ զէնքերու սահմանափակման, լաւագոյն եղանակը կը նկատէ բոլոր երկիրներուն համար պատերազմական ելեւմուտքի տարեկան կրճատումները, նկատի ունենալով սակայն, իւրաքանչիւր երկրի աշխարհագրական եւ քաղաքական դիրքը եւ ասոր համար կ'առաջարկէ հաստատել հակակշռի եւ հսկողութիւն կազմակերպութիւն մը, որ ներկայացնէ կնքելի պայմանագրութեան բոլոր ստորագիր կողմերը։

Դանիոյ պատուիրակը անդրադառնալով ֆրանսական առաջարկներուն, համաձայնութիւն կը յայտնէ Ազգերու Դաշնակցութեան միջազգային ուժ տրամադրելու ծրագրին. բայց անոր դժուարութիւնը կը կայանայ նման ուժերու գործնական կարելիութիւնը կազմակերպելուն եւ անոր արդար եւ ազդու կիրարկումը ապահովելուն մէջ։

## Չինեւճապոնական պատերազմը

Ճափոնցիներն սկսան Վու-Սունկը ռմբակոծել օդէն ու ցամաքէն, ինչպէս նաեւ Շափէյը ուրկէ բնակչութիւնը փախած է եւ ապաստանած Շանկհայ։

Չինաստանի ներկայացուցիչը երկար տեսակցութիւն մը ունեցաւ Ազգերու Դաշնակցութեան ընդհ. քարտուղարին հետ, որուն յանձնեց պաշտօնական նամակ մը։ Այդ նամակով, Չինաստան կը վերապահէ Ազգերու Դաշնակցութիւնը նիստի հրաւիրելու իր իրաւունքը եւ կը խնդրէ բացառիկ նիստի հրաւէր ուղղել անմիջապէս։

Չինաստանի այս խնդրանքին գոհացում տրուելով, Ազգերու Դաշնակցութիւնը պիտի հրաւիրուի բացառիկ նիստի մը։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

*ՖՐԱՆՍԱ ԵՒ ԻՏԱԼԻԱ.— Փետրուար 15ին, Հռոմի մէջ բանակցութիւններ պիտի սկսին, առեւտրական դաշնագիր մը կնքելու համար, Ֆրանսայի եւ Իտալիոյ միջեւ։*

*ՌՈՒՄԱՆԻԱ.— Ռումանիոյ վարչապետը Պ. Եորկա իր հրաժարականը ներկայացուց Թագաւորին։ Այս հրաժարման պատճառ ցոյց կը տրուի Թիթուլէսքոյի Պուքրէշ ժամանումը։ Թագաւորին պնդումին վրայ, Պ. Եորկա ետ առաւ իր հրաժարականը։*

*ՀՈԼԱՆՏԱ.— Վերջերս ֆրանսական մամուլը ակնարկութիւններ ուղղած էր Հոլանտայի, զէնքերու եւ ռազմանիւթի գաղտնի առեւտուրի մասին։ Հոլանտական կառավարութիւնը զեկոյցով մը կը յայտնէ թէ ո՛չ մէկ զէնք ու ռազմանիւթ կ'արտածուի, առանց կառավարութեան պաշտօնական արտօնութեան։*

ԳԵՐՄԱՆԻԱ.— Հանրապետական նախագահի ընտրութիւնները կը շարունակեն զբաղեցնել գերման մամուլը եւ հանրային կարծիքը։ Տակաւին յայտնի չէ թէ Հինտէնպուրկ պիտի ընդունի՞ թեկնածութիւնը։

— Հիդլերեաններու դէմ կազմուած «Արոյրէ ճակատ»ը կը շարունակէ գործել մանաւանդ այն վայրերուն մէջ, ուր վերջին ընտրութեանց ընթացքին Հիդլերեանները ամէնէն աւելի գործունէութիւն ցոյց տուած եւ քուէ շահած էին։

ՄԱՀ ՇԱՐԼ ԼԸ ԿՈՖԻՔԻ.— Ֆրանսացի վիպագիր, ակադեմական Շարլ Լը կոֆիք մեռաւ նախորդ իրիկուն։ 69 տարու էր։



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ա. Ե. Կ. Խաչի Մանուկներու Պաշտպանութիւն մասնաճիւղի հեր. Թական զրոյցը այսօր Կիրակի ժամը 3ին, 71 Ave. Kleber: Կը խօսի Տիկին Ս. Տէր Դաւթեան։ Նիւթ՝ «Մանուկներու սեռական դաստիարակութիւնը»։*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Շավիլ, Վ. Տ.— 70։*

*Թուլոն, Փամ.— 15։*

*Լիոն, Կ. Գ.— 35:*

*Լա Սէյն սիւր Մէր, Ս. Կ.— 35։*

*Գոնսթանցա, Գործ.— 1340: Կարգադրեցինք։*

## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻ

*Ամէն Կիրակի առաւօտ ժամը 10.30ին Պէլվիլի Ֆրանսական Աւետ. եկեղեցւոյ սրահին մէջ կը քարոզէ հայերէն լեզուով Վեր. Մ. Տէր Սահակեան։ Մուտքը ազատ է։*

*Հասցէ՝ 8 Boulevard Simon, Մէթրօ Պէլվիլ, Թրամուէյ 26։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*—Մարտիրոս Սապոնճեան՝ ծնած Կարին, Զամուր Սոքաք, 1903ին, հօր անունը՝ Տիգրան, կօշկակար, մօր անունը՝ Սաթենիկ, ծնեալ Մկրեան, կը փնտռէ իր ազգականները, հօրեղբայրներ՝ Աւետիս եւ Գրիգոր Սապոնճեան, մօրեղբայր՝ Մարտիրոս Մկրեան, մօրաքոյր Սօֆիա Թինճեան, զարմիկներ՝ Խերպէկեան եւ Թարոյեան։ Իմացնել «Յառաջ»ի վարչութեան։*




Imp. A. DER (Agopian)

**17, Rue Damesme, Paris (13)**

***Le Gérant H. STEPHAN***

# ԱՆԳՈՐԾՈՒԹԻՒՆԸ

## ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

Համաձայն Աշխատանքի Նախարարութեան վերջին վիճակագրութեան, փետրուար 15էն 20 երկարող շաբթու ընթացքին, Նպաստընկալ անգործներու թիւը կրած է 13,263ի յաւելում մը: փետրուար 20ին ուրեմն, վիճակագրութիւնը ցոյց կուտայ 283,844 անգործ՝ 620 համայնքներու մէջ, որոնց բնակչութիւնը կը հաշուուի 12 միլիոն 400 հազար: Ասոնց 54 հազարը կիներ են:

Անցեալ տարուան համապատասխան շրջանին անգործներու թիւն էր ընդամենը 38084:

փետրուար 20ին, փարիզի մէջ արձանագրուած անգործներուն թիւն էր 86,764, Սէնի միւս վայրերուն մէջ՝ 64,697: Ամբողջ Նահանգին համար ուրեմն՝ 151,461, որով մէկ շաբթուան ընթացքին 56 հազարի յաւելում մը Սէնի Նահանգին մէջ միայն:

Այս Նահանգին մէջ անգործութիւնը կը ներկայացնէ հետեւեալ պատկերը աշխատանքի զանազան ճիւղերուն մէջ (փետր. 20ին).

Մետաղագործութիւն 32174, շինութիւններ՝ 18 հազար, առեւտուրի եւ գրասենեակի մէջ աշխատող պաշտօնեաներ 14371, նպարեղէն՝ 12377, զգեստեղէն՝ 10587, փայտի ճարտարարուեստ՝ 9420, փոխադրութիւններ՝ 6142, կաշեգործութիւն՝ 5426, գրքի գործ՝ 2330, ապակեղէն՝ 970, հիւսկեղէն՝ 912, քիմիական արտադրութիւններ՝ 815, տան մէջ ծառաjողներ 4260, զանազան գործարաններու մէջ աշխատող պարզ բանուորներ՝ 30260:

Մնացեալ նահանգներուն մէջ, անգործներու ամբողջ թիւն է 132383, նախորդ շաբթուան վրայ 7657 հոգիի յաւելումով մը:

Անցեալ շաբթուան ընթացքին, Ֆրանսա մտած են 86, անկից մեկնած են 2434 օտար գործաւորներ:

## Ականջ դրէք Փարիզէն Պուքրէշ

վաղը, երկուշաբթի (29 փետր.) երեկոյեան ժամը 7.30ին (Պուքրէշի ժամ 9.30) Պուքրէշի ռատիօ-կայանը պիտի փոխանցէ Աթէնէի սրահին մէջ տեղի ունենալիք հայկական երեկոյթին երաժշտական մասը: Պիտի երգէ տեղւոյն կոմիտաս երգչախումբը հայ ժողովրդական երգեր՝ ղեկավարութեամբ երաժշտագէտ Պօթէզի:

## Ճափոնի դիմումը Ռուսիոյ

Ճափոնցիները որոշած ըլլալով ընդարձակել Մանչուրիոյ զինուորական գրաւման շրջանակը եւ մասնաւորաբար, զօրախումբեր ղրկել Ռուսիոյ սահմանակից շրջանները, Մոսկուայի Ճափոնական դեսպանը դիմում կատարեց Գարախանի, խօսելու համար Արեւելեան Չինաստանի երկաթուղիի օգտագործման մասին:

Ցայտնի է թէ այս երկաթուղիին վարչութիւնը կը գտնուի Չինաստանի եւ Ռուսիոյ ձեռքը միանգամայն:

Բայց այս երկու երկիրներէն ոչ մէկը իրական իշխանութիւն ունի այս գծին վրայ որ կ'անցնի Մանչուրիայէն:

Գարախան բացատրած է Ճափոնի դեսպանին թէ այդ հարցը «վեր է երկաթուղային վարչութեան իրաւասութենէն»:

կ'ըսուի սակայն թէ՝ Ռուսիա որեւէ ընդդիմութիւն չպիտի ընէ այդ գծին վրայ՝ Ճափոնական ուժերու փոխադրութեան:

## ՀԻԹԼԵՐԻ ԵՐԴՈՒՄԸ

Շնորհիւ իր բարեկամներուն, Հիթլեր յաջողեցաւ վերջապէս դառնալ գերման քաղաքացի: Գրեր էինք թէ Պրունշվիքի կառավարութիւնը որ հիթլերեան է, ցեղապաշտ պետը նշանակեր էր կառավարական խորհրդական եւ այդ պաշտօնով զայն կցեր էր Պերլինի պրունշվիքեան պատուիրակութեան: Հիթլեր երէկ առտու երդում տուաւ, հաւատարիմ մնալու սահմանադրութեան եւ այս կերպով վերջնապէս ստացած եղաւ գերման քաղաքացիի իրաւունքները:



# ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՍԱԼՆԱՁՈՐԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը այսօր Կիրակի ժամը 2ին Քաֆէ տը լա Մէրիի վերնայարկը, 2 Փլաս տ'Իթալի: Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները:




Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)

*Le Gérant H. STEPHAN*